Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ



# Ագիտատորի ԲԼՈԿՆՈՏ



№ 17 ՍԵՊՏԵՄԲԵՐ 1953

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԿ Կենտկոմ, Պրոպագանդայի և ագիտացիայի բաժին, Հեռախոս՝ 2—52—78



# ԺՈՂՈՎՈՒՐԴՆԵՐԻ ՊԱՅՔԱՐԸ ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ

Աշխարհի պրոգրեսիվ մարդկությունը համաշխարհային ազատագրական շարժման առաջին հարվածային բրիգադայի՝ հզոր Սովետական Միության գլխավորությամբ հետևողականորեն պայքար է մղում հանուն կայուն ու երկարատև խաղաղության։

Խաղաղության ժամանակակից շարժումը նպատակ ունի պայքարի հանել ժողովրդական մասսաներին խաղաղությունը պահպանելու և նոր համաշխարհային պատերազմը կանխելու համար։ Խաղաղության շարժումը ծավալվում է ամբողջ աշխարհով մեկ և օրըստօրե աճում ու ամրապնդվում է։ Խաղաղության կողմնակիցների ճակատի էլ ավելի ընդլայնման ու ամրապնդման գործում խոշոր իրադարձություն հանդիսացավ այս տարվա հունիսին տեղի ունեցած Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բուդապեշտի սեսիան։ Բուդապեշտի սեսիան անցավ այնպիսի պայմաններում, երբ զանազան երկրների

բնակչության ամենալայն խավերը ավելի ու ավելի հաստատակամորեն պահանջում էին միջոցներ ձեռք առնել միջազգային լարվածությունը թուլացնելու և բոլոր վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով կարգավորելու համար։ Այդ պահանջները իրենց վառ արտահայտությունը գտան Խաղաղության Համաշխարհային Խորհրդի որոշումներում։

Ելնելով կայուն ու երկարատև խաղաղություն ապահովելու հարյուր միլիոնավոր խաղաղասեր մարդկանց ձգտումից, Խաղաղության Համաշխարհային Խորհուրդն իր բուդապեշտյան սեսիայում հանդես եկավ բանակցությունների օգտին համաշխարհային կամպանիա սկսելու վերաբերյալ դեկլարացիայով։ Այդ կարևորագույն փաստաթղթի մեջ ընդգծված է այն անվիճելի ճշմարտությունը, որ տարբեր սիստեմների խաղաղ գոյակցությունը հնարավոր է և որ ամեն մի կոնֆլիկտ ու վեճ կարող են լուծվել բանակցությունների միջոցով։

Խաղաղության Համաշխարհային Խորհուրդը արտահայտվեց երկրների միջև տնտեսական և կուլտուրական կապերի հաստատման օգտին՝ հավասարության, փոխադարձ օգտավետության հիման վրա, Միավորված Ազգերի



կազմակերպությունում Չինաստանի օրինական իրավունքների ճանաչման օգտին։

Սեսիան ժողովուրդներին կոչ է անում պաշտպանել ամեն մի կառավարության ամեն մի նախաձեռնություն, որի նպատակն է կոնֆլիկտների խաղաղ լուծումը և խանգարել այն մարդկանց գործունեությունը, ովքեր արգելք են հանդիսանում կամ ձգձգում են համաձայնության հասնելը։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կոչի մեջ պարունակվող իդեաների հաղթանակի կարևորագույն փաստ է զինադադարի կնքումը Կորեայում։ Կորեայում զինադադարի ստորագրումը ակնհայտորեն ցույց տվեց, որ արդի միջազգային իրադրության մեջ վիճելի հարցերի կարգավորման միակ ճիշտ և միակ հնարավոր ուղին շահագրգռված կողմերի միջև բանակցությունների ուղին է և ոչ թե իմպերիալիստական տխրահռչակ «ուժի քաղաքականությունը» կիրառելու ուղին։ Պատերազմական գործողությունների դադարեցումը Կորեայում մարդկանց մեջ ամրապնդում է հավատը համաձայնության հասնելու հնարավորության նկատմամբ և նրանց ոգեշնչում է նոր գործողությունների՝ բանակցությունների միջոցով միջազգային պրոբլեմները լուծելու համար։

Բուդապեշտում Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կողմից ընդունված որոշումների կենսագործման նպատակով աշխարհի բոլոր երկրներում լայն կամպանիա է ծավալվել բանակցությունների օգտին։ Ֆրանսիայում հանուն բանակցությունների ու խաղաղության, ազգային կոնֆերենցիային, բացի դելեգատներից մասնակցել են բազմաթիվ կազմակերպությունների ներկայացուցիչներ, որոնք պահանջել են կառավարությունից, որպեսզի նա հանդես գա նախաձեռնությամբ հօգուտ մեծ տերությունների ներկայացուցիչների հանդիպման, բանակցություններ սկսել Վյետնամում պատերազմը դադարեցնելու նպատակով, հասնել գերմանական պրոբլեմի խաղաղ լուծմանը և մերժել Բոննի ու Փարիզի համաձայնագրերը։

Իտալիայում ավելի ու ավելի լայնորեն է ծավալվում ժողովրդական հզոր շարժումը, որը պահանջում է, որպեսզի կառավարությունը հանդես գա միջազգային լարվածությունը թուլացնելու օգտին և տնտեսական ու կուլտուրական կապեր հաստատի բոլոր երկրների հետ։ Այդ նպատակով Իտալիայում տեղի ունեցավ խաղաղության պաշտպանության ազգային կոնֆերենցիա։

Անգլիայում խաղաղության պաշտպանու-



թյան կոմիտեն բնակչությանը կոչ է արել կառավարությունից պահանջել, որպեսզի առաջարկվի ամենաբարձր ոլորտներում մեծ տերությունների ներկայացուցիչների մոտակա հանդիպման ժամանակն ու վայրը։ Կոմիտեի կոչը պահանջում է նաև, որ անգլիական կառավարությունը գործի ՄԱԿ-ի մեջ Չինաստանի օրինական իրավունքների օգտին։ Անգլիայի զանազան շրջաններում արդեն հազարավոր ստորագրություններ են հավաքվել այդ պահանջների տակ։

Ամերիկայի Միացյալ Նահանգներում կազմակերպվել է «Կորեայի խաղաղության պաշտպանության գործողությունների ամիս»։ Ամերիկյան ժողովրդի կողմից ԱՄՆ-ի պրեզիդենտի և կոնգրեսի անդամների մոտ ուղարկվում են դելեգացիաներ և նրանց ուղարկվում են նամակներ ագրեսիայի քաղաքականությունից հրաժարվելու և վիճելի հարցերը խաղաղ ճանապարհով լուծելու համար։

Հնդկաստանում անց է կացվում խաղաղության համահնդկական խորհրդի դիմումի տակ ստորագրություններ հավաքելու կամպանիան։ Դիմումը կառավարությանը կոչ է անում մեծ տերություններին առաջարկել՝ միջազգային վիճելի պրոբլեմները կարգավորելու բանակցությունների միջոցով և հանդես

գալու նրանց դեմ, ովքեր ցանկանում են խանգարել համաձայնության հասնելուն։

Խաղաղության Համաշխարհային Խորհրդի սեսիայի որոշումները լայնորեն պաշտպանում են միջազգային դեմոկրատական կազմակերպությունները՝ Պրոֆմիությունների համաշխարհային ֆեդերացիան, Երիտասարդության համաշխարհային դեմոկրատական ֆեդերացիան, Կանանց միջազգային դեմոկրատական ֆեդերացիան, որոնք միավորում են խաղաղության կողմնակիցների հարյուր միլիոնավոր մարդկանց։

Պայքարելով խաղաղության համար, խաղաղասեր ժողովուրդները չեն կարող անցնել պատերազմի հրձիգների նոր պրովոկացիաների կողքով։

Հայտնի է, որ ԱՄՆ-ի և մյուս իմպերիալիստական երկրների ագրեսիվ շրջանները խոսքով հանդես են գալիս հօգուտ խաղաղության, բայց գործնականում ընդլայնում են հյուսիս-ատլանտյան բլոկը, ռազմական նոր բազաներ են ստեղծում աշխարհի բոլոր մասերում, ուժեղացնում են սպառազինությունների մրցավազքը, շարունակում են «սառը պատերազմի» քաղաքականությունը, պրովոկացիաներ են կազմակերպում Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի



երկրների դեմ։ Իմպերիալիստները համաձայն չեն, որպեսզի շահագրգռված կողմերի փոխադարձ պայմանավորվածության հիման վրա միջազգային պրոբլեմները կարգավորվեն։ Միջազգային վիճելի հարցերի խաղաղ կերպով լուծումը ձախողելու նպատակին են ծառայում երեք տերությունների՝ ԱՄՆ-ի, Անգլիայի և Ֆրանսիայի արտաքին գործերի մինիստրների Վաշինգտոնի խորհրդակցության որոշումները, որոնք ուղղված են գերմանական «վերմախտի» գլխավորությամբ «Եվրոպական բանակի» ստեղծումը արագացնելուն և միջազգային մյուս պրոբլեմների լուծումը ձախողելուն։ Միջազգային իրադրության էլ ավելի սրման նպատակին է ծառայում նաև ԱՄՆ-ի և Հարավային Կորեայի միջև «փոխադարձ պաշտպանության» վերաբերյալ Դալլեսի և Լի Սին Մանի կողմից կնքված պայմանագիրը և այլն։

Խաղաղության պահպանման համար մղվող պայքարի ավանգարդում ինչպես միշտ, այնպես էլ այժմ ընթանում է հզոր Սովետական Միությունը, որը իր ամբողջ գոյության ընթացքում անձնվիրաբար պայքարել ու պայքարում է խաղաղության համար։ «Սովետական կառավարության համար, բոլոր մեզ՝ սո-

վետական մարդկանց համար,— հայտարարել է սովետական կառավարության ղեկավար Գ. Մ. Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում արտասանած ճառում,— խաղաղությունն ամրապնդելու և ժողովուրդների անվտանգությունն ապահովելու գործը տակտիկայի և դիվանագիտական մանևրների հարց չէ։ Դա մեր գլխավոր գիծն է արտաքին քաղաքականության բնագավառում»։

Միջազգային լարվածության թուլացման և խաղաղության ամրապնդման նպատակով Սովետական Միությունը բարելավում է իր հարաբերությունները հարևան պետությունների հետ և պայքարում է արտաքին տնտեսական կապերի ընդլայնման համար։

Խաղաղության պահպանման գործի համար Սովետական Միությունը առաջնակարգ նշանակություն է տալիս դեմոկրատական ճամբարի երկրների հետ սերտ համագործակցության և եղբայրական բարեկամական հարաբերությունների հետագա ամրապնդմանը։ Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների 800 միլիոն ժողովուրդների բարեկամությունը խարսխված է



Մարքսի-Էնգելսի-Լենինի-Ստալինի ինտերնացիոնալիզմի մեծ սկզբունքների վրա։ Պարզ է, որ այդ բարեկամությունից ծնունդ առած ուժերը անսահման են ու անպարտելի։

Անշեղորեն իրականացնելով խաղաղասիրական քաղաքականությունը՝ Սովետական կառավարությունը ելնում է այն բանից, որ ներկայումս չկա այնպիսի վիճելի կամ չլուծված հարց, որը կարելի չլիներ լուծել խաղաղ ճանապարհով, շահագրգռված կողմերի փոխադարձ պայմանավորվածության հիման վրա։

Ի պատասխան Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բուդապեշտի սեսիայի պատմական որոշումների, օգոստոսի 31-ին Մոսկվայում կայացավ Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի ընդլայնված պլենումը։

Պլենումը նշեց, որ սովետական ժողովուրդը ջերմ հավանություն է տալիս Խաղաղության Համաշխարհային Խորհրդի որոշումներին։ Պլենումին տված իր զեկուցման մեջ Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի նախագահ ընկ. Ն. Ս. Տիխոնովը հայտարարեց. «Մենք, սովետական մարդիկ,

վճռականորեն դատապարտում ենք ուժով սպառնալու քաղաքականությունը։ Մենք կողմնակից ենք բոլոր վիճելի հարցերի խաղաղ կարգավորմանը։

Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պլենումը մի անգամ ևս ցուցադրեց սովետական ժողովրդի անհողդողդ կամքը պատերազմը կանխելու և խաղաղությունը ապահովելու համար մղվող պայքարում։

Սովետական Միության խաղաղասիրական քաղաքականության վառ արտահայտությունն է մեր երկրի 1953 թվականի Պետական բյուջեն, որի ծախսերի 80 տոկոսը տրամադրված է ՍՍՌՄ էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացմանը, այն բանին, որպեսզի առավելագույն չափով բավարարվեն հասարակության նյութական և կուլտուրական հարաճուն պահանջմունքները։

Սովետական ժողովուրդը Կոմունիստական պարտիայի ղեկավարությամբ իր խաղաղ ստեղծագործական աշխատանքով հասել է խոշոր հաջողությունների։ Այսպես, վերջին 28 տարվա ընթացքում Սովետական Միության արդյունաբերական արտադրանքի թո-



ղարկումն աճել է 29 անգամ, իսկ արտադրության միջոցների արտադրությունը ամբողջությամբ վերցրած աճել է մոտավորապես 55 անգամ։

Սովետական Միության ձեռք բերած վիթխարի հաջողությունները է՛լ ավելի են ամրապնդում մեր երկրի տնտեսական ու ռազմական հզորությունը և խոշորագույն ավանդ են խաղաղության պահպանության մեծ գործում։ Պարզ է, որ ՍՍՌՄ-ի հզորությունը խաղաղության պահպանման հուսալի երաշխիքն է։

Սովետական բոլոր մարդիկ ջերմորեն արձագանքում են Խաղաղության Համաշխարհային Խորհրդի կոչին և միջազգային պրոբլեմների խաղաղ կարգավորման շարժումը պաշտպանում են իրենց պրակտիկ գործով։ Սովետական ժողովուրդը ամբողջ աշխարհի առջև նոր ուժով ցուցադրում է խաղաղության իր կամքը և ավելի սերտորեն է համախմբվում Կոմունիստական պարտիայի ու Սովետական կառավարության շուրջը, որոնք հաստատապես և հետևողականորեն վարում են խաղաղության քաղաքականություն։

Այժմ ռեսպուբլիկայի ձեռնարկություննե-

րում, հիմնարկություններում, կոլտնտեսություններում, ուսումնական և գիտական հաստատություններում տեղի ունեցող աշխատավորների ժողովները քննարկում են Խաղաղության Համաշխարհային Խորհրդի Բուդապեշտի սեսիայի և Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պլենումի բանաձևերը։

Ագիտատորների առաջնահերթ խնդիրն է՝ Խաղաղության Համաշխարհային Խորհրդի բուդապեշտյան սեսիայի որոշումների, ինչպես նաև Խաղաղության պաշտպանության Սովետական կոմիտեի պլենումի բանաձևի լայն մասսայականացումը, խաղաղության օգտին ագիտացիա մղելը, խաղաղության ժամանակակից շարժման բոլոր հարցերի խոր և բազմակողմանի պարզաբանումը աշխատավորության շրջանում։

ՍՏ. ՍՏԵՓԱՆՅԱՆ

---

# ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

1953 թվականի օգոստոսի 31-ից մինչև սեպտեմբերի մեկը Երևանում տեղի ունեցավ Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երրորդ սեսիան, որը լսեց և քննարկեց Հայկական ՍՍՌ ֆինանսների մինիստրի տեղակալ ընկ. Հ. Դ. Բաղալյանի զեկուցումը Հայկական ՍՍՌ 1953 թվականի Պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեի կատարման մասին։ Սեսիան միաձայն հաստատեց «Օրենք Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1953 թվականի Պետական բյուջեի մասին»։

Կոմունիստական պարտիայի իմաստուն ղեկավարությամբ սովետական ժողովուրդը իր անձնազոհ աշխատանքի շնորհիվ ձեռք է բերել նորանոր հաջողություններ ժողովրդական տնտեսության և կուլտուրայի բոլոր բնագավառներում։ Մեր բազմազգ երկրի ժողովուրդների բարեկամական ընտանիքում

նշանակալից հաջողություն է ձեռք բերել նաև հայ ժողովուրդը։

Հայկական ՍՍՌ-ում արդյունաբերական արտադրության ծավալը 1951—1952 թվականներին աճել է 30 տոկոսով, 1952 թվականին գերազանցելով 1940 թվականի մակարդակը 3,2 անգամ, իսկ 1953 թվականի առաջին կիսամյակում, 1952 թվականի առաջին կիսամյակի համեմատությամբ ավելացել է 15 տոկոսով։ Աշխատանքի արտադրողականությունը 1951 թվականին, 1950 թվականի համեմատությամբ բարձրացել է 8 տոկոսով, իսկ 1951 թվականի համեմատությամբ 1952 թվականին՝ 4 տոկոսով։

Սոցիալիստական գյուղատնտեսության ասպարեզում նորանոր հաջողություններ են ձեռք բերված գյուղատնտեսական կուլտուրաների բերքատվության բարձրացման, ցանքատարածությունների ընդարձակման, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացման ու էլեկտրիֆիկացման ուղղությամբ։ Ռեսպուբլիկայի ՄՏ կայաններում տրակտորային պարկի կարողությունը վերջին երկու տարում ավելացել է մեկ ու կես անգամ, ռեսպուբլիկայի կոլտնտեսությունների 80 տոկոսից ավելին էլեկտրիֆիկացված է։



Տարեցտարի աճում են կոլտնտեսությունների անբաժանելի ֆոնդերը, որոնք 1952 թվականին, 1940 թվականի համեմատությամբ, աճել են 3,5 անգամ, իսկ հիմնական միջոցները՝ ավելի քան 3 անգամ։

Ռեսպուբլիկայի արդյունաբերության և գյուղատնտեսության վերելքի հետ միասին խոշոր նվաճումներ են ձեռք բերվել ժողովրդական լուսավորության, առողջապահության, կուլտուրայի և գիտության բնագավառում։ Դրա հետ միասին բարձրացել է ռեսպուբլիկայի աշխատավորության նյութական բարեկեցության և կյանքի կուլտուրական մակարդակը։

Հետպատերազմյան ժամանակաշրջանում պարենային և արդյունաբերական ապրանքների պետական մանրածախ գների վեց անգամ կատարված իջեցման շնորհիվ բարձրացել է բանվորների, ծառայողների ռեալ աշխատավարձը և կոլտնտեսականների դրամական ու բնամթերային եկամուտները։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի կողմից հաստատված ռեսպուբլիկայի 1953 թվականի պետական բյուջեն նորանոր հնարավորություններ է ստեղծում ժողովրդի նյութական բարեկեցության և կուլտուրական մակարդակի է՛լ ավելի բարձրացման, ժո-

ղովրդական տնտեսության և կուլտուրայի հետագա վերելքի համար։

Սովետական Հայաստանի 1953 թվականի բյուջեն լրիվին ապահովում է ռեսպուբլիկայի ժողովրդական տնտեսության զարգացման 1953 թվականի պլանով նախատեսված միջոցառումների ֆինանսավորումը, ինչպես նաև այն խնդիրների իրագործումը, որ առաջադրեց ընկեր Մալենկովը ՍՍՌՄ Գերագույն Սովետի հինգերորդ սեսիայում՝ արդյունաբերության, գյուղատնտեսության, կուլտուրայի հետագա զարգացման և ժողովրդական սպառման առարկաների արտադրության ընդլայնման ասպարեզում։

Հայկական ՍՍՌ Գերագույն Սովետի երրորդ սեսիան ռեսպուբլիկայի 1953 թվականի Պետական բյուջեն հաստատեց՝

Եկամուտների գծով՝ 1.213.924 հազար ռուբլի

Ծախսերի գծով՝ 1.209.054 հազար ռուբլի

Ծախսերի նկատմամբ եկամուտները գերազանցում են մոտ հինգ միլիոն ռուբլով։

Ռեսպուբլիկայի 1953 թվականի բյուջեի բնորոշ առանձնահատկությունն այն է, որ զգալիորեն ավելացել է եկամուտների սեփական աղբյուրներից բյուջեի մուտքերի տեսակարար կշիռը, որը ընթացիկ տարվա



բյուջեում կկազմի 41,4 տոկոս՝ 1952 թվականի 28,9 տոկոսի դիմաց։

Այս հանգամանքը ցույց է տալիս ժողովրդական տնտեսության ճյուղերի շահութաբերության զգալի աճը, որի շնորհիվ շահույթներից բյուջեին տրվող մասհանումներն անցյալ տարվա համեմատությամբ զգալիորեն ավելանում են։

Հայկական ՍՍՌ Պետական բյուջեի եկամուտների ճնշող մեծամասնությունը ստացվում է սոցիալիստական տնտեսությունից։ Բյուջեի մուտքերը շրջանառության հարկից կկազմեն 519 միլիոն ռուբլի, կամ բյուջեի 42,8 տոկոսը, պետական ձեռնարկությունների և կազմակերպությունների շահույթներից մասհանումները՝ 335 միլիոն 200 հազար ռուբլի։

Բնակչությունից ստացվող մուտքերը 1953 թվականին կկազմեն 138 միլիոն 400 հազար ռուբլի, 1952 թվականի 217 միլիոն 700 հազար ռուբլու դիմաց։

Մեր պարտիան և կառավարությունը անընդհատ հոգում են աշխատավորության նյութական, կուլտուրական պահանջմունքները բավարարելու համար։ Դրա փայլուն ապացույցն են հանդիսանում արդյունաբերական և պարենային ապրանքների պետական

մանրածախ գների հետևողական իջեցումը, պետական փոխառության բաժնեգրման գումարների իջեցումը, որը ռեսպուբլիկայում կազմում է 121,5 միլիոն ռուբլի, գյուղատնտեսական հարկի նոր օրենքը, որի հետևանքով մեր ռեսպուբլիկայի գյուղացիները այս տարի ավելի քան 21 միլիոն ռուբլի պակաս հարկ են վճարում, քան 1952 թվականին։

Ռեսպուբլիկայի բյուջեի եկամտային մասը ապահովում է բոլոր ծախսերի լիակատար ֆինանսավորումը և ժողովրդական տնտեսության ու կուլտուրայի հետագա զարգացումը։ Պայքարը բյուջեի եկամտային մասի անշեղ կատարման համար հանդիսանում է մեր ռեսպուբլիկայի բոլոր բանվորների, կոլտնտեսականների և ինտելիգենցիայի գործը։

Պետական բյուջեի հաջող կատարման հիմքը՝ խնայողության ռեժիմն է, որը միաժամանակ արտադրության շահութաբերության հիմքն է։ Այստեղից պայքարը խնայողության խստագույն ռեժիմ կիրառելու համար մեր աշխատավորների պատվի գործն է։

Գերագույն Սովետի կողմից հաստատված Հայկական Սովետական Սոցիալիստական



Ռեսպուբլիկայի 1953 թվականի Պետական բյուջեի մասին օրենքով ժողովրդական տնտեսության ֆինանսավորմանը հատկացված է 364 միլիոն 640 հազար ռուբլի, կամ բյուջեի 30,2 տոկոսը, բացի դրանից, ի հաշիվ ձեռնարկությունների սեփական միջոցների, ժողովրդական տնտեսության վրա ծախսվելու է 200 միլիոն 900 հազար ռուբլի, ընդամենը՝ 565,7 միլիոն ռուբլի։

Ընթացիկ տարվա բյուջեում սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը հատկացված է 724 միլիոն 263 հազար ռուբլի, կամ բյուջեի մոտ 60 տոկոսը, որից լուսավորության համար՝ 484 միլիոն 972 հազար ռուբլի, առողջապահության և ֆիզիկական կուլտուրայի համար՝ 177 միլիոն 663 հազար ռուբլի, սոցիալական ապահովությանը և սոցիալական ապահովագրությանը՝ 61 միլիոն 628 հազար ռուբլի։

Գերագույն Սովետի սեսիան հաստատեց ռեսպուբլիկական ենթակայության քաղաքների և շրջանների 1953 թվականի բյուջեն, որը ռեսպուբլիկայի Պետական բյուջեի ընդհանուր ծավալում կազմում է 592 միլիոն 755 հազար ռուբլի՝ ինչպես եկամուտների, այնպես էլ ծախսերի գծով, որից 31 միլիոն 500 հազար ռուբլի հատկացվել է բնակարա-

նային կոմունալ շինարարության, 31 միլիոն 700 հազար ռուբլի քաղաքների, շրջկենտրոնների և բանվորական ավանների բարեկարգման համար, ավելի քան 9 միլիոն՝ քաղաքների փողոցների, հրապարակների, կամուրջների հիմնական նորոգման համար։

Այսպիսով, ընթացիկ տարվա բյուջեի ավելի քան 90 տոկոսը հատկացված է ժողովրդական տնտեսության և սոցիալ-կուլտուրական միջոցառումների ֆինանսավորմանը, որը վառ կերպով ապացուցում է Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության անդուլ հոգատարությունը ազգային ռեսպուբլիկաների բարգավաճման և ժողովրդի նյութական-կուլտուրական մակարդակի բարձրացման նկատառմամբ։

ՍՍՌՄ Պետական բյուջեն, ինչպես նաև միութենական ռեսպուբլիկաների պետական բյուջեները, ցույց է տալիս Կոմունիստական պարտիայի և Սովետական պետության խաղաղասիրական քաղաքականությունը։ ՍՍՌՄ բյուջեի մոտ 80 տոկոսը հատկացված է սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի հետագա զարգացմանը։

Եթե մեր երկրում ռազմական ծախսերի համար հատկացված է բյուջեի 20,8 տոկո-



սը, ապա կապիտալիստական երկրներում, հատկապես ԱՄՆ-ում այն կազմում է բյուջեի ավելի քան 73 տոկոսը, Անգլիայում՝ 42 տոկոսը, Ֆրանսիայում բյուջեի մոտ 40 տոկոսը։

Եթե Սովետական պետության բյուջեի եկամուտները ստացվում են հիմնականում սոցիալիստական տնտեսությունից, որը կազմում է բյուջեի 4/5 մասը, ապա կապիտալիստական երկրներում բյուջեի եկամուտները հիմնականում ստացվում են բնակչությունից գանձվող հարկերից։ ԱՄՆ-ում բնակչությունից գանձվող ուղղակի հարկը 1952/53 բյուջետային տարում, 1937/1938 բյուջետային տարվա համեմատությամբ, բարձրացել է ավելի քան 12 անգամ։

Անգլիայում և Ֆրանսիայում աշխատավոր բնակչությունից գանձվող հարկը հասել է այդ երկրների պատմության մեջ չտեսնված չափերի։ 1952/53 թվականին Անգլիայում հարկի չափը 37 տոկոսով գերազանցեց երկրորդ համաշխարհային պատերազմի ժամանակաշրջանի ամենաբարձր մակարդակը։

Այս փաստերը ցույց են տալիս, որ Սովետական Միության Պետական բյուջեն խաղաղության բյուջե է, որ Սովետական պետու-

թյունը ոչ թե խոսքով, այլ գործով միշտ վարել է և վարում խաղաղասիրական քաղաքականություն։ Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության ներքին և արտաքին քաղաքականությունը վկայում է մեր Հայրենիքի ամրապնդվող հզորությունը, որի հիմքը սովետական ժողովրդի անձնուրաց ստեղծարար աշխատանքն է։

Սովետական Միության աշխատավորների հետ միասին Հայկական ՍՍՌ աշխատավորներն ավելի սերտորեն համախմբված Կոմունիստական պարտիայի և Սովետական կառավարության շուրջը, ջանք չեն խնայի ռեսպուբլիկայի բյուջեն լրիվ կատարելու և իրենց ավանդը մտցնելու կոմունիստական հասարակարգ կառուցելու մեծ գործում։

Գ. ՄՈՒՐԱԴԽԱՆՅԱՆ

---



## ԱՅՍ ՏԱՐԻ ԻՆՉ Է ԿԱՌՈՒՑՎՈՒՄ ՄԵՐ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱՅՈՒՄ

✪ Շնորհիվ լենինյան-ստալինյան ազգային քաղաքականության կենսագործման, մեր մեծ երկրի բոլոր ժողովուրդների միջև ամրապնդվել է եղբայրական փոխադարձ օգնությունն ու համագործակցությունը, ՍՍՌՄ ժողովուրդները հասել են քաղաքական, տնտեսական և կուլտուրական ծաղկման։

Սովետական Միության եղբայրական ժողովուրդների ընտանիքում ծաղկման ու բարգավաճման է հասել նաև Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկան, որտեղ ամեն տարի իրագործվում է արդյունաբերական ձեռնարկությունների, կուլտուրայի ու գիտության հաստատությունների և բնակարանային մեծ շինարարություն, բարեկարգվում են ռեսպուբլիկայի գյուղերն ու քաղաքները։

✪ Այս տարի ռեսպուբլիկայում միութենական, ռեսպուբլիկական և տեղական կազ-

մակերպություններին գծով կատարվելու է ավելի քան 600 միլիոն ռուբլու շինարարություն։ Դա հնարավորություն կտա շահագործման հանձնել տասնյակ նորակառույցներ։

✪ Ռեսպուբլիկայում արդյունաբերության էլեկտրիֆիկացման մակարդակը բարձրացնելու, էլեկտրաէներգիայի գործադրումը գյուղատնտեսության մեջ ընդլայնելու, բնակչության կենցաղային կարիքների համար էլեկտրաէներգիայի թողարկման քանակը ավելացնելու նպատակով իրականացվում է հիդրոէլեկտրակայանների լայն շինարարություն։

✪ Շինարարական ծավալուն աշխատանք է կատարվելու քիմիական արդյունաբերության ձեռնարկությունների գծով, որը հնարավորություն կտա տարեցտարի ավելացնել կոլտնտեսություններին մատակարարվող պարարտանյութերի քանակը։

✪ Դրամական խոշոր ներդրումներ են կատարված ռեսպուբլիկայի շինանյութերի արդյունաբերության ձեռնարկությունների արտադրական կարողությունն ավելացնելու համար։ Կապիտալ ներդրումների շնորհիվ Արթիկ-տուֆ քարի հանույթը կավելանա 40 հազար խորանարդ մետրով, պեմզայինը՝



100 հազար խորանարդ մետրով, տեղական տուֆինը՝ 100 հազար խորանարդ մետրով և այլն։ Շահագործման կհանձնվի հրակայուն իրերի արտադրության նոր գործարանը Երևանում։

✪ Ռեսպուբլիկայում շինարարական մեծ աշխատանք է կատարվում թեթև արդյունաբերության նոր ձեռնարկություններ կառուցելու և հին ձեռնարկություններն ընդլայնելու համար։ Այդ նպատակով այս տարի կատարվելու է 47 միլիոն ռուբլի ներդրում, որի մի զգալի մասն արդեն իրացված է։ Միայն Երևանի նուրբ գործվածքեղենի կոմբինատում այս տարի կտեղադրվի ավելի քան 80 նոր մեքենա։ Խոշոր գումար է հատկացվում նաև Շահումյանի շրջանի Լենինի անվան մետաքսագործվածքային նորակառույց գործարանը լրիվ կարողությամբ շահագործելու համար։

Սննդի արդյունաբերության նոր ձեռնարկություններ կառուցելու և հին ձեռնարկություններն ընդլայնելու նպատակով այս տարի ներդրվելու է 80 միլիոն ռուբլի։ Լենինականում շուտով շահագործման կհանձնվի հացի նոր գործարան, որը օրական արտադրելու է 37 տոննա հաց։ Այս տարի շահագործման կհանձնվեն կաթնայուղային մր-

թերզների, պանրի և խտացրած կաթի նոր գործարանները ռեսպուբլիկայի տարբեր շրջաններում։ Շահագործման կհանձնվի Կիրովականի սպանդանոց սառցարանը, որն ունենալու է օրական 20 տոննա մսի և 2 տոննա երշիկի արտադրության կարողություն։ Ղափանում, Հոկտեմբերյանում կառուցվելու են կոնսերվի, իսկ Երևանում գինու նոր գործարաններ։

✪ Այս տարի ռեսպուբլիկայի քաղաքներում և բանվորական ավաններում կատարվող բնակարանային շինարարության վրա ծախսվելու է ավելի քան 105 միլիոն ռուբլի, որը իրացնելուց հետո ազգաբնակչությունը կստանա 90 հազար ք. մ. բնակելի տարածություն։ Միաժամանակ անհատական բնակարանային շինարարության գծով բնակչությունը կստանա 15 միլիոն 500 հազար ռուբլի վարկ։

✪ Խոշոր գումարներ է ծախսվելու առողջապահական հիմնարկների շինարարության վրա։ Նոր հիվանդանոցներ ու ամբուլատորիաներ են կառուցվում էջմիածնի, Թալինի և մյուս շրջաններում։

✪ Ռեսպուբլիկայում բուռն թափով առաջ է գնալու դպրոցական շինարարությունը։ Այս տարի ռեսպուբլիկայի քաղաքներում, բան-



վորական ավաններում ու գյուղերում կառուցվելու է 25 մասսայական և միջնակարգ մասնագիտական դպրոց, որտեղ սովորելու են մոտ 10 հազար հոգի։ Դրամական խոշոր գումար է հատկացված բարձրագույն ուսումնական հաստատությունների նոր շենքեր կառուցելու համար։ Երևանում կառուցվում է Մոլոտովի անվան Պետական համալսարանի նոր բազմահարկ շենքը, որի վրա ծախսվելու է 41 միլիոն ռուբլի, որից այս տարի կծախսվի 2,5 միլիոն ռուբլի։

Բացի այդ, ընթացիկ տարում 2 միլիոն 500 հազար ռուբլի ներդրում է կատարված գյուղատնտեսական և պոլիտեխնիկական ինստիտուտների ուսումնական նոր շենքեր, լսարաններ, լաբորատորիաներ կառուցելու համար։

✪ Խոշոր աշխատանք է կատարված կինո-թատրոնների նոր շենքեր կառուցելու ուղղությամբ։ Այս տարի ռեսպուբլիկայի քաղաքներում և շրջկենտրոններում շահագործման կհանձնվեն կինո-թատրոնների 9 նորակառույց շենք, ինչպես, օրինակ, Երևանում, Գորիսում, Սպիտակում, Մեղրիում և այլ վայրերում։

✪ Տարեցտարի ընդլայնվում է ռեսպուբլիկայի սանատորիաների և հանգստյան

տների ցանցը։ Այս տարի միայն «Ջերմուկ» սանատորիայում նոր առողջարաններ կառուցելու համար ներդրված է 8 միլիոն ռուբլի։ Շուտով շահագործման կհանձնվի Արզնիում կլինիկական առողջարանը 200 մահճակալով։

✪ Այս տարի շինարարական խոշոր աշխատանք է կատարվում մեր ռեսպուբլիկայի մայրաքաղաք Երևանում։ Միայն բնակարանային շինարարության գծով ծախսվելու է 54 միլիոն ռուբլի։ Մինչև տարվա վերջը մայրաքաղաքի բնակչությունը կստանա 47 հազար քառակուսի մետր բնակելի տարածություն։ Շահագործման կհանձնվի տրամվայի նոր ուղին, որը քաղաքը կմիացնի Նոր Զեյթուն թաղամասի հետ։ Հատուկ ուշադրություն է դարձվում քաղաքի բարեկարգման վրա։ Ասֆալտապատվելու են քաղաքի փողոցներն ու հրապարակները՝ 120 հազար քառակուսի մետր տարածությամբ, ընդարձակվելու է կանաչ գոտին քաղաքում և քաղաքի շրջակայքում։

✪ Քաղաքում շահագործման կհանձնվեն արտադրական ձեռնարկությունների բազմաթիվ նորակառույց շենքեր։ Արդեն լրիվ կերպով շահագործման է հանձնվել ժամացույցի նորակառույց գործարանը, որի շինարարու-



թյան վրա ծախսվել է ավելի քան 20 միլիոն ռուբլի։ Կառուցված է և շուտով շահագործման կհանձնվի մարգարինի գործարանը, մոտ ժամանակներս կավարտվի նաև կոնյակի գործարանի շինարարությունը, արդեն շահագործման է հանձնըվել նոր գարեջրի գործարանը։ Առաջիկայում կգործարկվի Երևանի մարմարի գործարանը, որի շինարարության վրա ծախսվել է 21 միլիոն ռուբլի։ Գործարանն արտադրելու է նաև մարմարից պատրաստված լայն սպառման առարկաներ։ Տեղական արդյունաբերության մինիստրության Երևանի Կահույքի ֆաբրիկայում կառուցվում է չքեղ կահույքի նոր ցեխ, որը տարեկան տալու է 2 միլիոն ռուբլու արտադրանք։ Երևանում կառուցվում է գրենական պիտույքների նոր գործարան, որը տարեկան արտադրելու է 10 միլիոն հատ տետրակ։

---

# ԲՈՒԼՂԱՐԱԿԱՆ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՌԵՍՊՈՒԲԼԻԿԱ

Սեպտեմբերի 9-ին բուլղար ժողովուրդը
նշեց միապետական-ֆաշիստական դիկտա-
տուրայից իր ազատագրման և երկրի սահ-
մաններից հիտլերյան զավթիչներին դուրս
վռնդելու իններորդ տարեդարձը:

1944 թվականի սեպտեմբերի 8-ին սովե-
տական զորքերը, հետապնդելով նահանջող
հիտլերյան բանակին, մտան Բուլղարիայի
տերիտորիան: Բուլղար ժողովուրդը հսկայա-
կան խանդավառությամբ, երգ ու ծաղկով
դիմավորեց սովետական ռազմիկներին:
Ռուսները երկրորդ անգամ Բուլղարիան փըր-
կեցին օտարերկրյա ստրկացումից՝ 1878
թվականին թյուրքերի տիրապետությունից,
1944 թվականին՝ հիտլերյան լծից:

1944 թվականի սեպտեմբերի լույս 9-ի
գիշերը Բուլղարիայի մայրաքաղաք Սոֆիա-
յում սկսվեց համաժողովրդական ապստամ-
բությունը: Ֆաշիստական կառավարությունը
տապալվեց և ստեղծվեց Հայրենական ճա





կատի առաջին բուլղարական կառավարությունը: 1944 թվականի սեպտեմբերի 9-ը դարձավ բուլղար ժողովրդի ազգային տոնը:

Համաժողովրդական ապստամբության հաղթանակը, որ հնարավոր դարձավ հիտլերյան Գերմանիայի դեմ Սովետական Միության տարած համաշխարհային պատմական հաղթանակի շնորհիվ, մի ռևոլյուցիոն հեղաշրջում էր, որով Բուլղարիան թևակոխեց դեմոկրատական զարգացման ուղին:

Բուլղարիայի Ժողովրդական Ռեսպուբլիկան գտնվում է Բալկանյան թերակղզու արևելյան մասում: Նրա տերիտորիան մոտ 111 հազար քառակուսի կիլոմետր է, բնակչությունը՝ ավելի քան 7 միլիոն մարդ:

Բուլղարիայի մայրաքաղաք Սոֆիան ունի մեկ և կես միլիոնից ավելի բնակչություն: Երկրի մյուս խոշոր քաղաքներն են՝ Պլովդիվը, Պլևենը, Տոլբուխինը, Սև ծովի նավահանգիստներ Ստալին և Բուրգաս քաղաքները, Դանուբի գետային նավահանգիստը Ռուսեն: Արագորեն աճում է Դիմիտրովգրադը՝ ռեսպուբլիկայի նոր ինդուստրիալ կենտրոնը:

Բուլղարիայի ընդերքը հարուստ է գորշ ածխի հանքերով և այլ օգտակար հանածոներով: Բուլղարիան հարուստ է բուժիչ հանքային աղբյուրներով:



Բուլղարիայի կլիման բարենպաստ է հողագործության, անասնաբուծության և այգեգործության զարգացման համար: Ցանքատարածությունների մեծ մասը բռնում են հացահատիկային կուլտուրաների ցանքերը: Գերակշռողը ցորենն է: Տեխնիկական կուլտուրաներից մշակվում է՝ արևածաղիկ, բամբակ, ծխախոտ, շաքարի ճակնդեղ, կանեփ: Կազանլիկի դաշտավայրում, որ գտնվում է բալկանյան լեռնաշղթայի և Սրեդնա-Հեռան միջև, մշակվում է հռչակավոր կազանլիկյան վարդը, որի ծաղկաթերթիկներից պատրաստվում է արժեքավոր վարդայուղ:

Նախապատերազմյան Բուլղարիան տնտեսական տեսակետից Եվրոպայի ամենահետամնաց երկրներից մեկն էր: Բնակչության մոտ 80 տոկոսը զբաղվում էր գյուղատնտեսությամբ: Ցարական Բուլղարիայի արդյունաբերությունը սաղմային վիճակում էր գտնվում:

Բուլղարիան հիտլերյան օկուպանտներից ազատագրելուց և միապետական-ֆաշիստական կառավարությունը տապալելուց հետո ժողովրդական իշխանության առաջ ծառացան մեծ ու դժվարին խնդիրներ: Անհրաժեշտ էր վերականգնել պատերազմի հետևանքով քայքայված տնտեսությունը և արմատական սոցիալ-էկոնոմիկական վերափոխություններ

կատարել՝ երկրի էկոնոմիկան բարձրացնելու
և սոցիալիստական ուղիով զարգացնելու
համար։
Ժողովրդական իշխանությունը ազգայնաց-
րեց արդյունաբերական ձեռնարկությունները,
երկաթուղիները, փոստը, հեռագիրը, քարած-
խի հանքերը, էլեկտրակայանները, բանկե-
րը։ Հաստատվեց արտաքին առևտրի մոնոպո-
լիա։ Բուլղարիայի ժողովրդական կառավա-
րությունն օգտագործեց այդ բոլոր լծակները՝
երկրի էկոնոմիկան արագորեն վերականգնե-
լու համար հօգուտ աշխատավորների։
1947 թվականի ապրիլին Բուլղարիան ձեռ-
նամուխ եղավ ժողովրդական տնտեսության
երկամյա պլանի կատարմանը։ Երկամյակի
հաջող կատարման շնորհիվ հաղթահարվեցին
հետպատերազմյան տնտեսական դժվարու-
թյունները, կառուցվեցին բազմաթիվ նոր
ձեռնարկություններ։ Արդյունաբերական ար-
տադրության նախապատերազմյան մակար-
դակը Բուլղարիան արդեն 1948 թվականին
գերազանցեց ավելի քան մեկ և կես անգամ։
Կոմունիստական պարտիայի նախաձեռնու-
թյամբ մշակվեց 1949—1953 թվական-
ների հնգամյա պլանը։ Նրա հիմնական
էկոնոմիկական և քաղաքական խնդիրն էր
Բուլղարիայում սոցիալիզմի հիմքերի կառու-



ցումը՝ երկրի ինդուստրացման ու էլեկտրիֆի-
կացման, գյուղատնտեսության կոոպերաց-
ման և մեքենայացման միջոցով։
Բուլղար ժողովրդի անձնվեր աշխատանքի
շնորհիվ ժամկետից շուտ կատարվեց ռես-
պուբլիկայի առաջին հնգամյա պլանը։ Ար-
դյունաբերական արտադրության գծով հըն-
գամյակը կատարվեց 3 տարի 10 ամսում։
Հնգամյակի չորս տարիների ընթացքում կա-
ռուցվել և ընդարձակվել է ավելի քան 700
արդյունաբերական ձեռնարկություն։ Կա-
ռուցվել են այնպիսի խոշոր գործարաններ,
ինչպիսիք են Ստալինի անվան քիմիական
կոմբինատը, ցելյուլոզայի գործարանը, «Ռես-
պուբլիկա» և Վիլկո Չերվենկովի անվան
ջերմաէլեկտրոցենտրալները, Վասիլի Կոլա-
րովի անվան էլեկտրամեքենաշինական գոր-
ծարանը, Էրնստ Թելմանի անվան տեքստիլ
կոմբինատը։
Հնգամյակի չորրորդ տարում՝ 1952 թվա-
կանին, արդյունաբերական արտադրության
նախապատերազմյան մակարդակը Բուլղա-
րիայում գերազանցվեց ավելի քան 4 ան-
գամ։ Հնգամյակի տարիներին աճեց ու զար-
գացավ բուլղարական արդյունաբերության
նոր ճյուղը՝ մեքենաշինությունը։ Միայն անց-
յալ տարվա ընթացքում ռեսպուբլիկայի մե-

քենաշինական գործարանները յուրացրին ավելի քան 130 տեսակի բարդ մեքենաների ու հաստոցների թողարկումը, որոնք առաջ չէին արտադրվում երկրում։

Զգալիորեն մեքենայացված է ռեսպուբլիկայի արագորեն աճող ածխարդյունաբերությունը։ Բուլղարական ածխահանքերում լայնորեն կիրառվում է սովետական տեխնիկան, այդ թվում՝ ածխային կոմբայնները։ Արդեն անցյալ տարվա վերջերին երկրում 4,5 անգամ շատ էլեկտրաէներգիա էր արտադրվում, քան նախապատերազմյան տարիներին։ Միայն «Ռեսպուբլիկա» էլեկտրակայանը, որ շարք է մտել անցյալ տարի, ավելի շատ էլեկտրաէներգիա կտա, քան տալիս էին հին Բուլղարիայի բոլոր էլեկտրակայանները՝ միասին վերցրած։

Բուլղարիան հնգամյակի տարիներին հետամնաց գյուղատնտեսական երկրից վերածվեց ինդուստրիալ-ագրարային երկրի։ Ռեսպուբլիկայում արդյունաբերական արտադրանքի ծավալը գերազանցեց գյուղատնտեսական արտադրանքի ծավալին։ Բուլղարիայի արդյունաբերական արտադրության մեջ մեծ չափով ավելացավ ծանր արդյունաբերության արտադրանքի տեսակարար կշիռը։ Լայն սպառման ապրանքների արտադրությունը



անցյալ տարի երեք անգամ ավելի էր, քան պատերազմից առաջ։

Բուլղարիայի այդքան արագ էկոնոմիկական զարգացումը հնարավոր դարձավ շնորհիվ այն մեծ, բազմակողմանի և անշահախնդիր օգնության, որ ցույց է տալիս Սովետական Միությունը բուլղար ժողովրդին։ Երկարատև վարկի արտոնյալ պայմաններով Սովետական Միությունը Բուլղարիային մատակարարում է սարքավորում և մեքենաներ՝ կառուցվող արդյունաբերական ձեռնարկությունների համար, գյուղատնտեսական մեքենաներ և հումք։

«Մեր երկիրը,— մատնանշել է Բուլղարիայի Կոմունիստական պարտիայի Կենտկոմի գլխավոր քարտուղար Վիլկո Չերվենկովը,— երբեք չէր կարողանա այժմյան տեմպերով ինդուստրացվել առանց Սովետական Միության, առանց նրա օգնության, առանց սոցիալիստական լագերի առկայության, մի լագեր, որին գլխավորում է Սովետական Միությունը»։

Առաջին հնգամյակի տարիներին մեծ հաջողություններ է ձեռք բերել Բուլղարիայի նաև գյուղատնտեսությունը։ Կոոպերացված տնտեսությունների թիվը այս տարվա սկզբներին հասնում էր 2747-ի։ Նրանք մշակում

են ռեսպուբլիկայի բոլոր վարելահողերի ավելի քան 60 տոկոսը։

Տարեցտարի ավելանում է երկրի դաշտերում աշխատող մեքենաների քանակը։ Այս տարվա սկզբներին Բուլղարիայի 140 մեքենա-տրակտորային կայաններում տրակտորների թիվը հասնում էր ավելի քան 12 հազարի։ Այս տարի բերքահավաքին մասնակցում էր 1500 սովետական կոմբայն։ Դաշտ դուրս եկավ նաև բուլղարական առաջին «Դիմիտրովեց—6» կոմբայնը։

Կոլեկտիվ աշխատանքը, գյուղատնտեսական աշխատանքների մեքենայացումը, առաջավոր սովետական կոլտնտեսային փորձի և միչուրինյան ագրոբիոլոգիական գիտության նվաճումների կիրառումը օգնեցին բուլղարական գյուղի աշխատավորներին՝ զգալիորեն բարձրացնելու իրենց դաշտերի բերքատվությունը։ Հացահատիկի համախառն բերքը անցյալ տարի գերազանցեց պլանով 1953 թվականի համար սահմանված մակարդակը։ Բուլղարիայում անցյալ և նախանցյալ տարի հացահատիկի միջին բերքը մեկ երրորդով ավելի է եղել, քան 1939 թվականին։ Այս տարի նույնպես առատ բերք է ստացվել։ Ռեսպուբլիկայում հիմնականում լուծվել է հացահատիկային պրոբլեմը։



Ժողովրդական տնտեսության մեծ հաջողությունները հնարավորություն տվին վերացնելու բնակչության մատակարարման քարտային սիստեմը և հետևողականորեն երեք անգամ անցկացնելու արդյունաբերական ու պարենային ապրանքների մանրածախ գների իջեցում։ Միայն վերջին անգամ, օգոստոսի 2-ին անցկացված գների իջեցումը բնակչությանը տարեկան տալիս է մոտ 900 միլիոն լևի օգուտ (մեկ լևը հավասար է 59 կոպեկի)։

1952 թվականին բանվորի միջին ռեալ աշխատավարձը 38 տոկոսով բարձր էր, քան 1939 թվականին, իսկ այժմ այն է՛լ ավելի է բարձրացել։ Զգալիորեն ավելացել են նաև կոոպերացված գյուղացիների եկամուտները։ Երկրում ընդմիշտ վերացված է գործազրկությունը։ Աճում է բանվորների և ծառայողների թիվը։

Ծաղկում է Բուլղարիայի նոր, սոցիալիստական կուլտուրան։ Դպրոցներում սովորողների թիվը 1200 հազարից ավելի է։ Անցյալ տարի 100 հազար դպրոցականներ ամառն անց են կացրել պիոներական ճամբարներում, իսկ այս տարի ճամբարներում եղել են ավելի մեծ թվով աշակերտներ։ Աշխատավորների երեխաների համար լայնորեն բացվել են բարձրագույն ուսումնական հաստատություն-

ների դոները։ Իրենց աշխատանքում մեծ հաջողությունների են հասել բուլղարական գիտնականները, գրողները, արտիստները։ Գիտության, գյուղատնտեսության և արվեստի ասպարեզում ձեռք բերած նվաճումների համար ռեսպուբլիկայի աշխատավորները պարգևատրվում են Դիմիտրովյան մրցանակներով։

Երկրի քաղաքական, էկոնոմիկական և կուլտուրական կյանքի հիմնական ղեկավար և ուղղություն տվող ուժն է Բուլղարիայի Կոմունիստական պարտիան։ Բուլղարիայի Կոմունիստական պարտիան, որը ղեկավարվում է մարքս-լենինյան ուսմունքով և ՍՍՌՄ-ում սոցիալիստական շինարարության փորձով, վայելում է ամբողջ ժողովրդի սերն ու վստահությունը, պաշտպանություն գտնում նրա կողմից։

Բուլղար ժողովուրդը, որին ոգեշնչում և ղեկավարում է Բուլղարիայի Կոմունիստական պարտիան, Սովետական Միության և ժողովրդական դեմոկրատիայի երկրների ժողովուրդների հետ եղբայրական անխախտ բարեկամությամբ առաջ է ընթանում իր երկրում սոցիալիզմի կառուցման ուղիով։

Վ. ՎԱՍԻՆ

---

# ՏԵՂԵԿԱՏՈՒ ԲԱԺԻՆ

ԲՈՆՆԻ ԿԱՌԱՎԱՐՈՒԹՅՈՒՆ.— Հակաժողովրդական կառավարություն Արևմտյան Գերմանիայում։ Խախտելով 1945 թվականի Պոտսդամի կոնֆերենցիայի որոշումը ֆաշիզմը և միլիտարիզմն արմատախիլ անելու մասին, Ամերիկայի, Անգլիայի և Ֆրանսիայի ռեակցիոն կառավարողները Գերմանիայի իրենց օկուպացիոն գոտում, Արևմտյան Գերմանիայում, Բոնն քաղաքում ստեղծեցին հակաժողովրդական, խամաճիկային կառավարություն։ Հետագայում սովորական դարձավ Արևմտյան Գերմանիայում ստեղծված այդ հակաժողովրդական կառավարությունը անվանել Բոննի կառավարություն։ Բոննի կառավարությունը կազմված է մեծ մասամբ պատերազմի հանցագործներից, որոնք գերմանական ժողովրդի ազգային շահերը վաճառում են ամերիկյան իմպերիալիստներին, երկիրը դարձնելով նոր պատերազմի պլացդարմ։

Հակաժողովրդական այդ կառավարությունը ամրապնդում է միլիտարիզմը և ռևանշիզմը երկրում, աղքատացնում է ազգաբնակչությանը, խորացնում Գերմանիայի պառակտումը։ Հակաժողովրդական այդ կառավարությունը երկիրը մտցրել է ամերիկյան ագրեսիվ դաշինքների և բլոկների սիստեմի մեջ։

ՌԵՎԱՆՇ— *Ֆրանսերեն բառ է, որ նշանակում է փոխ վրեժ պատերազմի կամ խաղի ժամանակ կորցրածը հետ բերելու, հետ շահելու համար։ Հիտլերյան ռազմամոլները անցնելով իշխանության գլուխ, նոր հափշտակողական պատերազմ բորբոքեցին, որպեսզի 1914—1918 թ. թ. պատերազմում կորցրածը հետ շահեին և իրագործեին իրենց զառանցական պլանները համաշխարհային տիրապետություն նվաճելու, ամբողջ աշխարհում ֆաշիստական ռեժիմ հաստատելու մասին։*

*Սովետական ժողովուրդը ջախջախեց գերմանական հափշտակիչներին և խորտակեց նրանց ավազակային պլանները։*

*Սակայն այժմ ռեակցիոն տարրերի, պատերազմի ամերիկյան և անգլիական հրձիգների օգնությամբ Արևմտյան Գերմանիայի կառավարողները, այսպես կոչված Բոննի կառավարությունը՝ Կոնրադ Ադենաուերի գլխավորությամբ ռևանշիստական պլաններ են մշակում նոր ագրեսիվ պատերազմ սկսելու Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայի և աշխատասեր մյուս ժողովուրդների դեմ։ Այդ կառավարության ղեկավարները ռևանշիստներ են և վարում են ռևանշիստական քաղաքականություն։*

ՖԱՇԻՍՏԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԵՎ ԿԱԶՄԱԿԵՐՊՈՒԹՅՈՒՆՆԵՐ ԱՐԵՎՄՏՅԱՆ ԳԵՐՄԱՆԻԱՅՈՒՄ— *ԱՄՆ-ի և Անգլիայի կառավարող ռեակցիոն շրջանների աջակցությամբ Արևմտյան Գերմանիայում ստեղծվել և*



*ստեղծվում են ֆաշիստական միություններ և կազմակերպություններ, ինչպես, օրինակ, «Պողպատե սաղավարտ», «Ռազմական պարաշյուտիստների», «Գերմանական երիտասարդության», «Հիտլերի նախկին թիկնապահների» և այլն, որոնք զինվորական կադրեր են պատրաստում ռևանշիստական բանդաների համար։ Այդ միությունների մեջ մտնում են հիտլերյան թափթփուկները, որոնց հաջողվել է ազատվել ջախջախումից։ Նրանց համար պատերազմը, թալանը և բռնությունը դարձել են արհեստ։ Այդ միություններին և կազմակերպություններին ղեկավարում են պատերազմի հանցագործները, որոնք ամերիկյան և անգլիական օկուպացիոն իշխանությունների օգնությամբ ազատվել են բանտերից։*

ՌԵՖԵՐԵՆԴՈՒՄ— *Համաժողովրդական հարցում, երբ ժողովրդի կարծիքը հայտաբերվում է քվեարկման միջոցով։ Ռեֆերենդումը լինում է երկու տեսակ, այն է՝*

*1. Պարտադիր ռեֆերենդում, երբ որոշակի հարցերի վերաբերյալ օրենսդրական օրգանի որոշումները անպայման ենթարկվում են համաժողովրդական քվեարկման և*

*2. Ֆակուլտատիվ (պայմանական) ռեֆերենդում, երբ օրենսդրական օրգանի որոշումները ենթարկվում են համաժողովրդական քվեարկման միայն այն դեպքում, եթե այդ պահանջում են սահմանված թվով ընտրողներ։ Այսպիսով, ռեֆերենդումը անցկացվում է պետական հատուկ կարևորագույն հարցեր լուծելիս։*

ԳԱՆԳՍՏԵՐ— Բանդիտ, ավազակային խմբի մասնակից։ Գանգստերները գործունեության լայն ասպարեզ ունեն ԱՄՆ-ում, որտեղ մեծ չափով տարածված է հանցագործությունը։ Այսպես, օրինակ, Չիկագոյում հրատարակվող ոստիկանական ամսագրի տվյալներով ԱՄՆ-ում 1945 թվականին կատարվել է ավելի քան 11 հազար բռնաբարություն, մինչև 60 հազար զինված հարձակում, 54 հազար կողոպուտ։ Հափշտակվել է 242 հազար ավտոմեքենա, կատարվել է մոտ 1 միլիոն 200 հազար գողություն։ Հետաքննության ֆեդերալ բյուրոյի տվյալներով 1945 և 1946 թվականներին ԱՄՆ-ում հանցագործությունից եղած վնասը հասել է տարեկան 15—16 միլիարդ դոլարի։ 1946 թվականի առաջին կիսամյակում, 1945 թվականի համեմատությամբ, ծանր հանցագործությունների քանակն ավելացել է 13 տոկոսով։ Հանցագործությունների քանակն ավելացել է հատկապես երիտասարդության մեջ։

Ինչպես հայտնի է, ԱՄՆ-ի ձեռնարկություններում լայն չափով զարգացած է լրտեսական սիստեմը։ Լրտեսները սերտորեն կապված են մի կողմից գանգստերների, իսկ մյուս կողմից պաշտոնական ոստիկանության հետ։ Ձեռնարկատերերի թելադրանքով գործադուլների ժամանակ գանգստերների միջոցով կիրառվում են զանազան պրովոկացիոն գործողություններ, կատարվում են առաջադեմ բանվորների նկատմամբ տեռորիստական ակտեր։ Այդպիսով հանցագործությունը ԱՄՆ-ում դարձել է ամենօրյա երևույթ։

---

ՕԳՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻՆ

# ԹԵՄԱՆԵՐ ԵՎ ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ ԱԳԻՏԱՏՈՐՆԵՐԻ ԶՐՈՒՅՑՆԵՐԻ ՀԱՄԱՐ

I

## ՀԱՅԿԱԿԱՆ ՍՍՌ 1953 ԹՎԱԿԱՆԻ ՊԵՏԱԿԱՆ ԲՅՈՒՋԵՆ

### ԳՐԱԿԱՆՈՒԹՅՈՒՆ

1. Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.։*

2. Օրենք՝ Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության 1953 թվականի Պետական բյուջեի մասին: *«Ս. Հ.» 1953 թ. օգոստոսի 11-ի համարը։*

3. Հ. Ղ. ԲԱԴԱԼՅԱՆ— Զեկուցում «Հայկական ՍՍՌ 1953 թվականի Պետական բյուջեի և Հայկական ՍՍՌ 1952 թվականի Պետական բյուջեի կատարման մասին», *«Ս. Հ.» 1953 թվականի սեպտեմբերի 1-ի համարում։*

4. Ռեսպուբլիկայի Պետական բյուջեն:
*«Ս. Հ.» 1953 թ. սեպտեմբերի 1-ի առաջնոր-
դողը*:

5. Օրենք՝ Հայկական Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկայի 1953 թվականի Պետական բյուջեի մասին: *«Ս. Հ.» 1953 թ. սեպտեմբերի 3-ի համարը*:

## II

## ՍՍՌՄ-ը ԽԱՂԱՂՈՒԹՅԱՆ ԵՎ ՄԻՋԱԶԳԱՅԻՆ ՏԱՐԱՁԱՅՆՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԽԱՂԱՂ ԿԱՐԳԱՎՈՐՄԱՆ ՀԱՄԱՐ ՄՂՎՈՂ ՊԱՅՔԱՐՈՒՄ

1. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.*:

2. Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.*:

3. Ն. Ս. ՏԻԽՈՆՈՎ— Զեկուցում Խաղաղության Պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումում: *«Ս. Հ.» 1953 թ. սեպտեմբերի 1-ի համարը*:

4. Խաղաղության Պաշտպանության Սովետական Կոմիտեի պլենումի բանաձևը: *«Ս. Հ.» 1953 թ. սեպտեմբերի 2-ի համարը*:

5. Խաղաղության հետագա ամրապնդման համար: *«Ս. Հ.»-ի սեպտեմբերի 6-ի առաջնորդողը*:



## III

## ԱՊԱՀՈՎԵՆՔ ԺՈՂՈՎՐԴԱԿԱՆ ՍՊԱՌՄԱՆ ԱՊՐԱՆՔՆԵՐԻ ԱՐՏԱԴՐՈՒԹՅԱՆ ՇԵՇՏԱԿԻ ՎԵՐԵԼՔԸ

1. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.*:

2. Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ- Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.*:

3. Ա. ՄԻԿՈՅԱՆ— Ճառ ՀամԿ(բ)Պ XIX համագումարում: *Հայպետհրատ, 1952 թ.*:

4. Ա. Գ. ԶՎԵՐԵՎ— Զեկուցում «ՍՍՌՄ 1953 թվականի Պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1951—52 թվականների Պետական բյուջեի կատարման մասին»: *«Ս. Հ.» 1953 թ. օգոստոսի 6-ի համարը*:

5. Սովետական երկրի հոյակապ խնդիրները:
*(«Պրավդա»-ի օգոստոսի 10-ի առաջնորդողը, տպագրված «Ս. Հ.»-ի օգոստոսի 11-ի համարում)*:

## *IV*

## ԱՊԱՀՈՎԵՆՔ ԲՆԱԿՉՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՊԱՐԵՆԱՄԹԵՐՔԻ ԵՎ ԹԵԹԵՎ ԱՐԴՅՈՒՆԱԲԵՐՈՒԹՅԱՆ ՀԱՄԱՐ ՀՈՒՄՔԻ ԱՌԱՏՈՒԹՅՈՒՆ ԵՐԿՐՈՒՄ

1. Գ. ՄԱԼԵՆԿՈՎ— Հաշվետու զեկուցում պարտիայի 19-րդ համագումարին ՀամԿ(բ)Պ Կենտրոնական

Կոմիտեի աշխատանքի մասին: *Հայպետհրատ, 1952 թ.։*

2. Գ. Մ. ՄԱԼԵՆԿՈՎ— Ճառ ՍՍՌՄ Գերագույն Սովետի սեսիայում: *Հայպետհրատ, 1953 թ.։*

3. Ա. ՄԻԿՈՅԱՆ— Ճառ ՀամԿ(բ)Պ XIX համագումարում: Հայպետհրատ, 1952 թ.:

4. Ա. Գ. ԶՎԵՐԵՎ— Զեկուցում «ՍՍՌՄ 1953 թվականի Պետական բյուջեի մասին և ՍՍՌՄ 1951—52 թվականների Պետական բյուջեի կատարման մասին»: *«Ս. Հ.» 1953 թ. օգոստոսի 6-ի համարը։*

5. Օրենք Սովետական Սոցիալիստական Ռեսպուբլիկաների Միության 1953 թվականի Պետական բյուջեի մասին: *«Ս. Հ.» 1952 թ. օգոստոսի 11-ի համարը։*

6. Օրենք գյուղատնտեսական հարկի մասին: «Ս. Հ.» *1953 թ. օգոստոսի 11-ի համարը։*

---

Խմբագիր՝ Ս. ՆՇԱՆՅԱՆ

*ՎՖ 03999 Պատվեր № 850 Տիրաժ 9050*

*Հայպոլիգրաֆհրատի № 2 տպարան, Երևան, Կնունյանցի № 8, 1953 թ.։*